Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 ՀՈՒԼԻՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետը ընկեր Ստալինի ցուցումով 1950 թվականի մայիսի 30-ին ընդունեց՝ «Հայկական ՍՍՌ-ի կոլխոզներում ցորենի և բամբակի արտադրությունն ավելացնելու, խոզերի և թռչունների գլխաքանակը ավելացնելու և հանրային անասնապահության մթերատվությունը բարձրացնելու միջոցառումների վերաբերյալ» որոշումը, որը հանդիսանում է մեր ռեսպուբլիկայի պարտիական, սովետական կազմակերպությունների և հողային օրգանների մարտական ծրագիրը՝ գյուղատնտեսության հետագա զարգացման, կոլխոզները տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու, աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակը բարձրացնելու գործում։

Միութենական կառավարության այդ պատմական որոշումը մինչև վերջ ու անշեղորեն կենսագործելու համար Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և ՀԿ(բ)Պ

կենտկոմը ընդունել են գործնական միջոցառումներ։

Ռեսպուբլիկայում խոշոր հաջողություններ են ձեռք բերված գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Հետպատերազմյան տարիներին ռեսպուբլիկայում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի ընդարձակման հետ միասին, մեծ չափով աճել է նրա բերքատվությունը։ Կոլխոզային արտադրության մեջ լայնորեն գործադրվում է սովետական ագրոտեխնիկան, տարեց-տարի աճում է ՄՏ կայանների ցանցը, լայնացել է տրակտորների, կոմբայնների և այլ գյուղատնտեսական բարդ մեքենաների աշխատանքի ծավալը, որի շնորհիվ լուրջ հաջողություններ են ձեռք բերված կոլխոզների ու կոլխոզնիկների եկամուտը ավելացնելու և աշխօրերի արժեքը բարձրացնելու գործում։ Միլիոնատեր կոլխոզների թիվը հասել է 1949 թվականին 112-ի՝ 1940 թվականի 40-ի դիմաց։

Ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատավորության կողմից մեծ եռանդով կենսագործվում է հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը. ներկայումս մեր կոլխոզներն ունեն ավելի շատ մթերատու



անասուններ, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված այս հաջողությունները, նախապատրաստական այն մեծ աշխատանքը, որ ներկայումս տարվում է կոլխոզներում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման կենսագործման ասպարեզում, երաշխիք է հանդիսանում, որ ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և հողային կազմակերպությունները, կոլխոզային աշխատավորությունը ինչպես միշտ, այս անգամ ևս պատվով կկատարեն Սովետական կառավարության վերոհիշյալ որոշումը։

Սովետական կառավարության որոշման մեջ կենտրոնական հարցը հանդիսանում է հացահատիկային, հատկապես ցորենի արտադրության լայնացման խնդիրը, նրա բերքատվության բարձրացումը այն հաշվով, որ ռեսպուբլիկան իր սեփական հացի արտադրությամբ մոտակա տարիներում լիովին ապահովի իր պահանջները։ Ցորենի ցանքերի տարածության լայնացումը պետք է գնա ի հաշիվ նոր ոռոգվող հողերի, չօգտագործվող, սակավ բերքատու արոտատեղերը յուրացնելու, թփուտներն արմատահան անելու,

ամառային արոտավայրերից որոշ մաս հատկացնելու։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը նախատեսում է ռեսպուբլիկայի կոլխոզներում լայն չափով ընդարձակել ոռոգելի հողերի տարածությունը. առաջիկա 2—3 տարվա ընթացքում սկսվելու է նորերի և ավարտվելու սկսված մի շարք ջրանցքների ու ջրհան կայանների կառուցումը, որով ավելանալու է ոռոգելի տարածությունները 73,5 հազար հեկտարով, որը բացառիկ նշանակություն ունի հացահատիկային կուլտուրաների արտադրության բարձրացման համար։ Կառավարության որոշմամբ նախատեսված է ցորենի բերքատվությունը մեկ հեկտարից 1955 թվականին հասցնել 20—22 ցենտների և 1957 թվականին՝ 22—25 ցենտների։ Այդ նպատակով ընդարձակվելու է ՄՏ կայանների ցանցը, մեծ չափով հագեցվելու են ՄՏ կայանները գյուղատնտեսական ժամանակակից նոր մեքենաներով ու գործիքներով, որը հնարավորություն է ստեղծում հացահատիկային կուլտուրաների արտադրությունը խոշոր չափով մեքենայացնելու։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ սահմանված բերքատվությունն ապահովելու



համար նախատեսված է ցորենի ամբողջ ցանքատարածությունն ապահովել հանքային պարարտանյութերով, որը պետք է կատարվի ՄՏԿ-ների միջոցով, բնավճարով։ Նման խոշոր օգնությունը Սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի կողմից, կօգնի խոշոր չափով բարձրացնելու հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։

Բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի տեսակավոր սերմացուով ապահովելը։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և ՀԿ(բ)Պ Կենտկոմը մշակել են գործնական միջոցառումներ՝ ընդարձակելու ռեսպուբլիկայում սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքը, ստեղծելու ցորենի նոր սորտեր, առանձնապես ռեսպուբլիկայի լեռնային գոտու համար։ Անհրաժեշտ ուշադրություն է դարձվելու տեսակավոր սերմացուների արտադրության լայնացման, սերմնաբուծական կոլխոզների թիվն ավելացնելու և այդ կոլխոզների աշխատանքը ամրապնդելու գործի վրա այն հաշվով, որպեսզի լրիվ ապահովվի ռեսպուբլիկայի կոլխոզների պահանջը հացահատիկային կուլտուրաների շրջանացված տեսակավոր սերմացուներով։

Կառավարության որոշման մեջ լուրջ ուշադրություն է դարձվում բամբակի բերքատվության բարձրացմանը։ Բամբակի ցանքերի տարածությունը 1951—55 թ. թ. կոլխոզներում թողնվում է 1950 թվականի մակարդակին, իսկ բերքատվությունը 1955 թվականին պետք է հասցվի հեկտարից 27—29 ցենտների։

Լուրջ խնդիրներ են դրված ռեսպուբլիկայի պարտիական, սովետական կազմակերպությունների առաջ՝ հանրային անասնաբուծության զարգացման, հատկապես անասունների մթերատվության բարձրացման գործում. հացահատիկի արտադրության զգալի ավելացման, անասնակերի ամուր բազա ստեղծելու հետ մեկտեղ նախատեսվում է 1957 թվականի վերջում՝ 1950 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայում խոզերի ընդհանուր գլխաքանակը ավելացնել 3,5 անգամ, իսկ թռչուններինը՝ 5 անգամ։ Խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը հիմնականում պահվելու է 1950 թվականի մակարդակի վրա։ Զգալի չափով բարձրացվելու է կովերի կաթնատվությունը, ավելացվելու է ոչխարների բրդատվությունը։

Գործողության մեջ է մտել ռեսպուբլիկա-



յի գյուղատնտեսության հետագա զարգացման ու ծաղկման հոյակապ ծրագիրը։ Կոլխոզային գյուղացիությունը և գյուղատնտեսական բնագավառի աշխատողները տոգորված են հաջողությամբ կենսագործելու այն մեծ ու պատասխանատու խնդիրները, որ նրանց առջև դրել են պարտիան ու կառավարությունը։ Մեր պարտիական կազմակերպությունների, ագիտատորների մարտական խնդիրն է՝ քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալումով, գլխավորել մեր գյուղի աշխատավորների քաղաքական և արտադրական ակտիվությունը։ Ագիտատորները պետք է լայնորեն մասսայականացնեն կառավարության այդ պատմական որոշումը աշխատավորության լայն շրջանում, այն դարձնեն ամեն մի կոլխոզնիկի, ՄՏ կայանի, սովխոզի աշխատողի, գյուղատնտեսական մասնագետի սեփականությունը։ Ագիտատորները պետք է պարզաբանեն կառավարության որոշման մեծագույն նշանակությունը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման գործում, ցույց տան բոլշևիկների պարտիայի, Սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի հայրական ջերմ հոգատարությունը, վառ արտահայտությունը հայ ժողովրդի նկատմամբ։

# ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

*Ամեն տարի սովետական ժողովուրդը և նրա Զինված Ուժերը մեծ բերկրանքով տոնում են ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը։ 1939 թվի հունիսին, Սովետական Կառավարությունը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն որոշում ընդունեցին ամեն տարի տոնել ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը։ Եվ ահա այդ օրը դարձել է մեր Հայրենիքի ամենաժողովրդական և տրադիցիոն տոներից մեկը։*

*Սովետական Միության Զինված Ուժերը, այդ թվում՝ Ռազմա-Ծովային Նավատորմը, հերոսական և փառապանծ ուղի են անցել։ Սովետական պետության զարգացման բոլոր էտապներում մեր Զինված Ուժերը հուսալի պատվար են հանդիսացել մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանելու գործում։*

*ՍՍՌՄ-ը ծովային հզոր տերություն է։ Վաղուց ի վեր ծովային նավատոր-*



*մը հանդես է գալիս, որպես մի լուրջ ուժ այն պայքարում, որ ռուս ժողովուրդը մղում է իր երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման համար։ Սովետական մարդիկ օրինական կերպով հպարտանում են ռուս պանծալի նավատորմայինների հերոսական սխրագործություններով, ռուս ծովային ճանապարհորդների, գիտնականների, աշխարհագրագետների, ծովային հետախույզների խիզախություններով։ Ամբողջ աշխարհին հայտնի են ռուսական Նավատորմի փայլուն հաղթանակները Սև, Միջերկրական և Բալթիկ ծովերում։ Ժողովուրդը իր հիշողության մեջ միշտ թարմ է պահում ռուս ականավոր նավատորմայիններ Պետրոս Առաջինի, Սպիրիդովի, Ուշակովի, Սենյավինի, Լազարևի, Նախիմովի, Մակարովի, հռչակավոր նավաստիներ Պյոտր Կոշկայի, Ֆյոդոր Ուդալոյի և ուրիշների անունները։ Ռուս մարդիկ միշտ էլ անվեհեր ծովագնացներ են եղել, տակավին շատ վաղ ժամանակներում գտել են նոր երկրներ, մինչ այդ անհայտ ծովեր։ Նրանք կատարել են համաշխարհային նշանակություն ունեցող բազմաթիվ հայտնագործություններ՝ շատ առաջ անցնելով Արևմտյան Եվրոպայի երկրների ճանապարհորդներից։ Եվրոպացի-*

ների մեջ առաջինը ռուսներն են վիթխարի աշխատանք կատարել Ասիայի և Հյուսիսային Ամերիկայի Խաղաղօվկիանոսյան ափի հայտնագործման ու յուրացման ուղղությամբ, ուսումնասիրել Խաղաղ օվկիանոսի և նրա ափերի տարբեր մասերը Ալյասկայից մինչև Ավստրալիա։ Նոր ցամաքի՝ Անտարկտիդայի առաջին հայտնագործողը եղել են ռուսները։ Միայն 1803 թվից մինչև 1849 թիվը ռուսները երկու անգամ ավելի շատ շուրջերկրյա էքսպեդիցիաներ են կատարել, քան այդ նույն ժամանակամիջոցում անգլիացիները և ամերիկացիները միասին վերցրած։ Առաջինը ռուս ծովագնացներ Ֆյոդորովը և Գվոզդևն էին, որ անցան Բերինգյան նեղուցով և քարտեզագրեցին Ամերիկայի հյուսիս-արևմտյան մասը։

Ռուսական Նավատորմի հերոսական տարեգրության մեջ փայլուն էջեր է գրել ծովակալ Ֆ. Ուշակովը։ Նա ոչ միայն աչքի է ընկել օտարերկրյա զավթիչների դեմ մղված պայքարում, այլև ստեղծել ռուսական առաջավոր նավատորմի ռազմա-ծովային մանյովրային տակտիկան, որը տոգորված էր հարձակողական ոգով, հակառակորդի հետ վճռական մարտի բռնվելու և նրան լիովին



ջախջախելու ձգտումով։ Ուշակովը ռուսական ռազմա-ծովային դպրոցի ստեղծողներից է։ «Ծովակալ Ուշակովը,— գրել է «Պրավդան»,— Սուվորովի ժամանակակիցը, ծովային ուսուցման հռչակավոր Սևծովյան դպրոցի հիմնադիրներից մեկն էր, որից հետագայում դուրս եկան ծովակալներ Լազարևը, Կոռնիլովը, Նախիմովը, Իստոմինը»։

Ուշակովի ժամանակ է հիմնադրվել և կառուցվել Սևծովյան նավատորմի հիմնական բազան՝ Սևաստոպոլը (1783 թ.)։

Ռուս ծովայինները իրենց սխրանքներով աչքի են ընկել 1812 թվի Հայրենական պատերազմում։

ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմը ժառանգել է տասնամյակներում ստեղծված այնպիսի հարուստ տրադիցիաներ, որպիսին չունի և չի էլ կարող ունենալ աշխարհի և ոչ մի այլ նավատորմ։ Բոլշևիկյան պարտիան, հանճարեղ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը հանդիսանում են Սովետական Նավատորմի մեծ ստեղծողներն ու կազմակերպիչները։ Լենինյան «Իսկրայի» գաղափարների դիրքերի վրա առաջին կանգնողների շարքերում են եղել նավաստիները։ 1905 թվի

«Պոտյոմկին» զրահանավի վրա բարձրացած ապստամբությունը առաջին մասսայական ռևոլյուցիոն ելույթն էր բանակում և նավատորմում, ցարական զորքերի մի խոշոր զորամասի առաջին անցումը ռևոլյուցիայի կողմը։

1917 թվի հոկտեմբերի 25-ին (Նոյեմբերի 7-ին) «Ավրորայի» հրանոթային որոտներով է ազդարարվել նոր դարագլխի՝ սոցիալիստական դարաշրջանի սկիզբը։ Ռևոլյուցիոն նավատորմն ու նավաստիները Հոկտեմբերյան գրոհներում բոլշևիկյան պարտիայի կոչով օգնել են մեծագույն հաղթանակի կռվմանը։

Սովետական ժողովուրդը միշտ թարմ է պահում ռուսական Նավատորմի ռևոլյուցիոն տրադիցիաների հիշատակը և հպարտանում 1917 թվի հոկտեմբերին ծովայինների կատարած մարտական քաջագործություններով։

Սովետական Միության Ռազմա-Ծովային Ուժերը ժառանգել են այն բոլոր լավագույնն ու պրոգրեսիվը, ինչ որ ստեղծվել է նախառևոլյուցիոն ռուսական Նավատորմում։

ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմը իր մարտական դրոշները փառքով է օծել քաղաքացիական պատերազմի ու օտարերկրյա



ինտերվենցիայի տարիներին մեր երկրի թշնամիների դեմ մղած պայքարում, 1941—1945 թ. թ. Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմում։ Սովետական իշխանության նվաճումները պաշտպանելու, մեր Հայրենիքի ռազմա-տնտեսական հզորությունը բազմապատկելու գործում աչքի ընկնող դեր են կատարել սովետական ծովայինները։ Ծավալված քաղաքացիական պատերազմում, օտարերկրյա ինտերվենցիայի դեմ մղվող պայքարում զինվորական ծովայիններր ռազմաճակատներում Կարմիր Բանակի զորքերին ցույց էին տալիս մարտական օգնություն, նրանք կռվում էին ցամաքում, ծովում, գետային նավատորմիկների կազմում։

Քաղաքացիական պատերազմների տարիներին մեր երկրի Զինված Ուժերի սիստեմում կային երկու նավատորմ՝ Բալթիական և Սևծովյան և 15 առանձին նավատորմիկներ, այդ թվում՝ Օնեգայի, Չուդի, Հյուսիսային Դվինայի, Վոլգայի, Աստրախանի, Կասպիական (որից հետագայում ստեղծվում է Կասպիական նավատորմը), Դոնի, Ազովի, Դնեպրի, Արևմտյան Դվինայի, Ամուրի, Արալի, Ամու-Դարիայի և այլն։

Քաղաքացիական պատերազմների տարի-

ներին Ռազմա-Ծովային Նավատորմում խիզախաբար գործեցին և Հայրենիքի համար հերոսաբար ընկան Իվան Օգնևը, Անատոլի Ժելեզնյակը, Նիկոլայ Մարկինը, Վլադիմիր Պոլուխինը, Պավլեն Վինոգրադովը, Տիմոֆեյ Ուլյանցովը և ուրիշներ։

Իմպերիալիստական 14 պետությունների և ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ մղված պայքարը ավարտվեց սովետական ժողովրդի հաղթանակով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման խաղաղ զարգացման ժամանակաշրջանում, ստալինյան հնգամյակների տարիներին ծաղկեց և հզորացավ Սովետական Նավատորմը։ Լենինյան կոմերիտմիության ստանձնեց Նավատորմի շեֆությունը, որը բոլշևիկյան պարտիայի կողմից Նավատորմի նկատմամբ դրսևորվող հոգատարության մի նոր փայլուն վկայությունն էր։ Սովետական պետական և հասարակական կարգը չտեսնված պայմաններ ստեղծեց ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի զարգացման համար։ Միայն ստալինյան առաջին և երկրորդ հնգամյակների տարիներին ստեղծվեց մոտ 500 նոր ռազմանավ, իսկ Խաղաղօվկիանոսյան Նավատորմը, որը հիմնադրվել է մեծ Ստալինի



ջանքերով, 1939 թվին ուներ 100-ից ավելի ռազմանավ։ 1938 թվին մեր երկրի նավաշինական արդյունաբերությունը Ռազմա-Ծովային Նավատորմին տվել է հինգ անգամ ավելի շատ ջրատարողությամբ վերջրյա ռազմանավեր, քան երկրորդ հնգամյակի՝ արդյունաբերության այդ ճյուղի ամենաբարձրագույն արտադրողականության մեկ տարում։

ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի նախօրյակին, 1939 թվի հունվար-փետրվար ամիսներին նավաշինական գործարանների արտադրանքը կազմել է 1938 թ. համապատասխան ամիսների ամբողջ ապրանքային արտադրանքի 133,7 տոկոսը։

ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի կազմակերպողն ու ոգեշնչողը ընկեր Ստալինն է։ Չկա ռազմանավի, թնդանոթի ոչ մի նախագիծ, Ռազմա-Ծովային Նավատորմի շինարարության ոչ մի հարց, որով անձամբ չզբաղվի ընկեր Ստալինը։

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի կամքով երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին մեր երկրում ստեղծվել էր հզոր Ռազմա-Ծովային Նավատորմ։ Նրա կազմում կային՝ գծանավեր, նորագույն հածանավեր, ակա-

նավիրներ, սուզանավերի, տորպեդակիրնե-
րի, պահականավերի, ծովային տրաորդնե-
րի, զրահակատերների միավորումներ, ծո-
վային ավիացիայի, զենիթային հրետանու
միավորումներ, մեծ տրամաչափի առափնյա
մարտկոցներ։

Մեր երկիրը ակտիվ պաշտպանու-
թյան էր պատրաստվել իմպերիալիստական
երկրների հարձակումներից։ Հայրենական
Մեծ պատերազմը ամենալուրջ փորձություն
էր սովետական ժողովրդի, նրա Զինված
Ուժերի, այդ թվում ՍՍՌՄ Ռազմա-Ծովային
Նավատորմի համար։

Լենինի-Ստալինի պարտիայի կողմից
դաստիարակված սովետական ծովայինները
1941—1945 թ. թ. Հայրենական Մեծ պա-
տերազմում պատվով կատարեցին իրենց
պատմական դերը։

Հայրենական Մեծ պատերազմի տարինե-
րին Սովետական Ռազմա-Ծովային Նավա-
տորմի գլխավոր խնդիրն էր՝ թույլ չտալ
թշնամուն ծովից հարվածներ հասցնել մեր
բանակի թիկունքին, օգնել ցամաքային զո-
րամասերին և ջախջախել գերմանա-ֆաշիս-
տական զավթիչներին ու ճապոնական իմ-
պերիալիստներին։

Գերագույն Գլխավոր Հրամանատարու-



թյան այդ առաջադրանքը պատվով կատա-
րեցին սովետական ծովայինները։ Պատե-
րազմի ընթացքում սովետական ծովային-
ներն անօրինակ հերոսություններ կատա-
րեցին, դեսանտային չտեսնված գործողու-
թյուններով թուլացրին թշնամու ուժերը և
օգնեցին մեծ հաղթանակի կռվմանը։ Նո-
վորոսիյսկի 1943 թվի դեսանտային գոր-
ծողությունները դրա լավագույն վկայու-
թյունն են։ Հերոս քաղաքներ՝ Օդեսայի,
Սևաստոպոլի, Լենինգրադի պաշտպանու-
թյունները Հայրենական Մեծ պատերազմի
ոսկե տարեգրության պայծառ էջերից են։
Օդեսայի պաշտպանները 69 օր անընդհատ
ետ էին շպրտում գերմանա-ռումինական
զորքերի գրոհները։ Է՛լ ավելի վիթխարի
մարտեր ծավալվեցին Սևաստոպոլի մա-
տույցներում։ Սևաստոպոլի պաշտպանու-
թյունը տևեց 250 օր։ Միայն Սևաստոպոլի
համար մղված մարտերում գերմանական
զավթիչները տվեցին 300 հազար սպանված
և վիրավոր։ Սևաստոպոլի պաշտպանու-
թյանը մասնակցողները մասսայական հե-
րոսություններ և սխրագործություններ էին
կատարում։ Լենինյան-ստալինյան կոմ-
երիտմիության յոթ անդամներ Ստալինի ա-
նունը շուրթներին իրենց մինչև վերջին կա-

Թիվ արյունը նվիրեցին Հայրենիքի պաշտպանությանը և թույլ չտվին թշնամուն առաջ անցնելու։ Հերոսական մահով ընկած կոմերիտական Կալյուժնու մարմնի հետ գտնվել է մահից առաջ գրած նրա մի նամակը, որտեղ ասված է. «Հայրենիք իմ։ Ռուսական հող։ Ընկեր Ստալին։ Ես Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության զավակս, նրա դաստիարակածը, կռվել եմ այնպես, ինչպես ինձ թելադրել է իմ սիրտը, ոչնչացրել եմ թշնամիներին այնքան ժամանակ, որքան իմ կրծքում բաբախել է սիրտս։ Ես մեռնում եմ, բայց գիտեմ, որ մենք կհաղթենք։ Սևծովյան նավաստինե՛ր։ Ամուր կանգնեցե՛ք, ոչնչացրե՛ք ֆաշիստական կատաղած շներին։ Մարտիկի երդումը ես պահեցի։ Կալյուժնի»։

Այդ փոքր արյունակալած թերթիկը մեր դարաշրջանի ամենանշանավոր փաստաթղթերից է, այն սովետական ռազմիկի հոգևոր և բարոյական կերպարը բնութագրող փաստաթուղթ է։

165 օր պաշտպանվել է Խանկոն։ Բացառիկ տոկունություն ցուցաբերեցին Կրոնշտադտի, Օրեշկայի ծովայինները։

Հայրենական Մեծ պատերազմում աչքի ընկած ծառայությունների համար սովետա-



կան հարյուրավոր նավեր դարձել են գվարդիական, կոչվում են սովետական քաղաքների անուններով։ 1944 թվին Սովետական Բանակի կողմից թշնամուն հասցված ստալինյան 10 հարվածներից ութին անմիջական մասնակցություն են ունեցել Սովետական նավատորմայինները։ Դնեպրի նավատորմայինները մասնակցել են հիտլերյան Գերմանիայի որջի՝ Բեռլինի մատույցների ամրությունների ոչնչացմանը, ռուսական նավատորմի պատմության մեջ առաջին անգամ նրա ռազմանավերը եղան Շպրե գետի վրա։

Սովետական Ռազմա-Ծովային նավատորմայինները պատվով կատարեցին իրենց մարտական առաջադրանքը նաև միլիտարիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմում։

Հայրենական Մեծ պատերազմում աչքի ընկնող ծառայությունների համար ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Ուժերի 513 նավաստիների շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում, 7 ծովային սպաների շնորհվել է Սովետական Միության կրկնակի Հերոսի կոչում։ Պատերազմի ժամանակ նավաստիներին տրվել է 352.855 Սովետական Միության շքանշան և մեդալ։ Սովետական Զին-

ված Ուժերը ստալինյան ռազմական գիտությամբ առգորված, փայլուն հաղթանակներ տարան։ Մեր հաղթանակը պայմանավորված էր Սովետական պետական կարգի, սովետական հասարակարգի, ՍՍՌՄ Զինված Ուժերի, Սովետական Միության ժողովուրդների բարեկամության հզորությամբ ու կենսունակությամբ։ ՍՍՌՄ Զինված Ուժերի հզորության աղբյուրը մեծ Ստալինի իմաստուն ղեկավարությունն է։

ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերում արիաբար են մարտնչել Սովետական Միության ժողովուրդների, այդ թվում հայ ժողովրդի զավակները։ Հարյուրավոր հայ ռազմիկներ սովետական նավատորմայինների հետ ուս-ուսի պայքարել են գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։

Ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի օրենքով նախատեսված է 1950 թվին ծովային տրանսպորտի ապրանքաշրջանառությունը ավելացնել նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ 2,2 անգամ։ Նոր հնգամյակով



նախատեսված է ծովային նավատորմի տոննաժը ավելացնել 600 հազար տոննայով։

Օր օրի խտանում են Նավատորմին աջակցող կամավոր ընկերության (Դոսֆլոտի) շարքերը, որտեղ սովետական միլիոնավոր մարդիկ տիրապետում են ծովային նավատորմի գործին, աջակցում մեր Ռազմա-Ծովային Նավատորմի հզորությանը։

Սովետական Միությունը հաստատուն և հետևողականորեն վարում է խաղաղասիրական քաղաքականություն։ Ժամանակակից միջազգային իրադրության մեջ, երբ ամերիկա-անգլիական իմպերիալիստները նոր պատերազմի բոց են բորբոքում, երբ ամերիկյան իմպերիալիստները բացահայտ ագրեսիայի են դուրս եկել Կորեայում, ՍՍՌՄ Զինված Ուժերը անշալուրջ կերպով պաշտպանում են սոցիալիզմի երկրի պետական սահմանները։ ՍՍՌՄ-ը խաղաղության հուսալի հենարանն է ամբողջ աշխարհում։ Նոր պատերազմի հրձիգները, ամենից առաջ ԱՄՆ-ի կառավարող շրջանները, մոռանալով պատմության դասերը, իրենց նախորդների՝ գերմանա-ճապոնական իմպերիալիստների խայտառակ վախճանը, ձգտում են ժողովուրդներին նետել նոր սպանդի մեջ։

Բայց խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի ուժերը, որոնք օր օրի աճում են, լիովին ի վիճակի են սանձահարելու նոր պատերազմի հրձիգներին։ Աշխարհի ժողովուրդները դեմ են պատերազմի։ Այդ է վկայում ներկայումս ամբողջ աշխարհում ծավալվող խաղաղության կողմնակիցների շարժումը, Ստոկհոլմի կոչի տակ հավաքվող ստորագրությունները։ Միլիոնավոր մարդիկ արդեն իրենց ստորագրությունները դրել են Ստոկհոլմի կոչի տակ, մերկացնում են նոր պատերազմի հրձիգներին, միահամուռ կոչում՝ «Ձեռքերդ հեռու Կորեայից»։

Ընկեր Ստալինը խաղաղության դրոշն է, աշխատավոր մարդկության հույսն ու ապավենը։

Սովետական ժողովուրդը մեծ ցնծությամբ տոնելով իր հարազատ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը, բազմապատկում է իր նվաճումները, ցանկանում է տեսնել իր հարազատ Նավատորմը է՛լ ավելի ուժեղ և հզոր։

Թող աճի և բարգավաճի ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմը։



## ԱՐՏԱՊԼԱՆԱՅԻՆ ԿՈՒՏԱԿՈՒՄՆԵՐԸ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆ ԵՆ

Սոցիալիստական արտապլանային կուտակումները սովետական երկրի էկոնոմիկայի զարգացման, աշխատավորների նյութական դրության հետագա բարելավման կարևորագույն աղբյուրներից են։

Արտապլանային կուտակումները հանդիսանում են սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմն ընթացող սովետական մարդկանց հայրենասիրական նախաձեռնությունը։ Արտապլանային կուտակումների ստեղծման համաժողովրդական շարժման առաջին նախաձեռնողները հանդիսացան Մոսկվայի և Մոսկվայի մարզի արդյունաբերական 9 ձեռնարկությունների աշխատողները, որոնք 1948 թվի սկզբին մի կոչով դիմեցին երկրի արդյունաբերական ձեռնարկություններին՝ արտապլանային կուտակումներ տալու և պետության կողմից մինչև այդ տրվող դոտացիայից հրաժարվելու մասին։ Հայրենասիրական այդ նախաձեռնությանը ջերմորեն ար-

ձագանքեցին ու պաշտպանեցին Սովետա-
կան Միության արդյունաբերության բոլոր
աշխատողները։ Արտապլանային կուտա-
կումների ստեղծումը և պետության կողմից
տրվող դոտացիայից հրաժարվելը, նշանա-
կում է պլանավորվող սոցիալիստական կու-
տակումները հարստացնել մի նոր, լրացու-
ցիչ աղբյուրով։ Սոցիալիստական կուտակ-
ման նոր աղբյուրը պետության գանձարանին
է տալիս միլիարդավոր ռուբլիներ, որոնք որ-
պես պետական նպաստ (դոտացիա) տրվում
էին պետության կողմից արդյունաբերական
ձեռնարկություններին։

Սոցիալիստական հասարակության բուռն
զարգացումը պայմանավորված է տարեց-
տարի հայտնաբերվող սոցիալիստական կու-
տակումների նոր ու լրացուցիչ աղբյուրնե-
րով։ Սոցիալիստական կուտակումը հանդի-
սանում է ընդլայնած վերարտադրության
աղբյուրներից մեկը, ժողովրդական եկամտի
մի մասը, որը գործադրվում է արտադրու-
թյան անընդհատության կատարելու համար,
այսինքն արտադրության միջոցների, սննդի,
հագուստեղենի և մյուս բարիքների նյութա-
կան միջոցների արտադրությունը ծավալե-
լու, արտադրական ֆոնդերը ընդլայնելու,
արտադրությունը անդադար վերսկսելու ու



զարգացնելու համար։ Ընկեր Ստալինը հրս-
կայական նշանակություն է տվել սոցիա-
լիստական կուտակման հարցերին, սոցիա-
լիստական կուտակումը և ընդլայնած վե-
րարտադրությունը համարելով մեկ ամբող-
ջություն։ Ընկեր Ստալինը նշում է, որ «Վե-
րարտադրության մարքսիստական թեո-
րիան ուսուցանում է, որ արդի հասարակու-
թյունը չի կարող զարգանալ՝ տարեցտարի
կուտակումներ չանելով, իսկ առանց տա-
րեցտարի ընդլայնված վերարտադրություն
ունենալու՝ անհնարին է կուտակել։ Այս
պարզ է ու հասկանալի»։

Ընկեր Ստալինը բոլշևիկյան պարտիային
և սովետական ժողովրդին զինելով արտա-
դրողական ուժերի զարգացման կոնկրետ
ծրագրով, սոցիալիստական կուտակման հա-
մար բացահայտել ու բացահայտում է նո-
րանոր աղբյուրներ։

Դեռևս 1931 թ. հունիսի 23-ին տնտես-
վարների խորհրդակցությունում արտասա-
նած իր ճառում ընկեր Ստալինը խոսելով
կուտակումների այնպիսի աղբյուրների մա-
սին, ինչպիսիք են թեթև արդյունաբերու-
թյունը, գյուղատնտեսությունը և բյուջետա-
յին կուտակումները, նշում էր, որ նրանք

«չեն կարող և չպետք է անսահման լինեն։ Էլ ի՞նչ է մնում։ Մնում է ծանր արդյունաբերությունը։ Հետևաբար, պետք է հասնել այն բանին, որ ծանր արդյունաբերությունը — և ամենից առաջ նրա մեքենաշինական մասը — նույնպես կուտակումներ տա։ Հետևաբար, ուժեղացնելով ու ծավալելով կուտակման հին աղբյուրները՝ պետք է հասնել այն բանին, որ ծանր արդյունաբերությունը — և ամենից առաջ մեքենաշինությունը — նույնպես կուտակում տա։

Այս է ելքը»։

Ընկեր Ստալինը պահանջեց տնտեսվարներից՝ վերջ տալ անտնտեսավարությանը, մոբիլիզացնել արդյունաբերության ներքին միջոցները, արմատավորել տնտհաշվարկը բոլոր ձեռնարկություններում, պայքարել ինքնարժեքի սիստեմատիկ իջեցման համար և առանց բացառության արդյունաբերության բոլոր ճյուղերում ուժեղացնել ներարդյունաբերական կուտակումները։

Մեծ առաջնորդի ցուցումները դարձան հոյակապ գործողության ծրագիր՝ սոցիալիստական կուտակման ուղիները ընդարձակելու, կուտակման չափը ավելացնելու, ծանր ինդուստրիան զարգացնելու և մեր



երկրում սոցիալիզմի կառուցումն ապահովելու համար։ Թե ի՞նչ չափերով մեր երկրի աշխատավորները կենսագործեցին ընկեր Ստալինի պատմական ցուցումները, այդ վառ կերպով երևում է սոցիալիստական կուտակման մակարդակը պատկերող մի քանի տվյալներից։ Կուտակումների մակարդակը ՍՍՌՄ-ում 1932 թվի 26,9 տոկոսից, աճել է և 1950 թ. կազմել ազգային եկամտի 78,8 տոկոսը։ Որպես արդյունք կուտակումների, առաջին հնգամյակում կապիտալ աշխատանքների ծավալը ՍՍՌՄ-ում կազմել է 52,5 միլիարդ ռուբլի, երկրորդ հնգամյակում՝ 114,7 միլիարդ ռուբլի, իսկ հետպատերազմյան նոր հնգամյակում կազմել է 250,3 միլիարդ ռուբլի։ Մեծապես աճել է կապիտալ կուտակումների ավելացման մակարդակը։ ՍՍՌՄ-ի 1949 թվականի ժողովրդական եկամուտը 1940 թ. համեմատությամբ աճել է 36 տոկոսով, ըստ որում, արտադրության ծավալը 1949 թ. ընդլայնվել է 53 տոկոսով։

Ժողովրդական եկամտի անշեղ աճը և արտադրության բուռն զարգացումը մեր երկրի աշխատավորներին մղում է արտադրական նորանոր սխրագործությունների։ Արտապլանային կուտակումների համար

մղվող լարված պայքարը կոմունիզմ կառուցող բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին հնարավորություն տվեց ավելի լայն կերպով օգտագործել արտադրական ռեզերվները, է՛լ ավելի խնայողաբար, ավելի շահութաբեր կերպով աշխատել։

Մոսկվայի արդյունաբերական 9 ձեռնարկությունների աշխատողները արդեն 1948 թ. դեկտեմբերի 1-ին զեկուցեցին ընկեր Ստալինին, որ իրենք տվել են երկու միլիարդ ռուբլու արտապլանային կուտակում։ Մոսկվացիներից հետո իրենց պարտավորությունները կատարելու մասին հաղորդեցին Գորկու, Չելյաբինսկի, Խարկովի և մյուս մարզերի արդյունաբերության աշխատողները։

Մեր ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկությունների զգալի մասը նույնպես կատարեց արտապլանային կուտակումներ տալու իր ստանձնած պարտավորությունները, 1949 թվականին երկրին տալով 60 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։ Լենինականի Տեքստիլ կոմբինատը տվեց 8 միլիոն, Կիրովի անվան գործարանը՝ 7 միլիոն, Սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 4 միլիոն, Թեթև արդյունաբերության ձեռնարկությունները՝ 3,



Արհեստագործական կոոպերացիան՝ 7, Երևանի Քաղաքային Սովետի ձեռնարկությունները՝ 4 միլիոն ռուբլու արտապլանային կուտակումներ։ Երևանի Մահուդի գործարանն արդեն երրորդ տարին է, որ աշխատում է առանց դոտացիայի։ 1950 թ. հինգ ամսվա ընթացքում նա տվել է 397.000 ռուբլու արտապլանային կուտակում, տնտեսել է 10 տոննա թել, որը հավասար է 20.000 մետր գործվածքի։

Հասնել արտապլանային կուտակումների, այդ նշանակում է մեծագույն չափով խնայել հումքը, նյութերը, վառելանյութը, էլեկտրաէներգիան, կրճատել վարչական և ոչ արտադրական ծախսերը, հայտնաբերել կուտակման այնպիսի աղբյուրներ, ինչպիսին է ռացիոնալիզատորական առաջարկությունների և գյուտերի լայն կիրառումը։

Ընկեր Ստալինը խոսելով արտադրանքի ինքնարժեքը հետևողական կերպով իջեցնելու մասին, ասում է. «Իսկ ի՞նչ բան է ինքնարժեքի իջեցումը։ Դուք գիտեք, որ ինքնարժեքի իջեցման յուրաքանչյուր տոկոսը նշանակում է 150—200 միլիոն ռուբլու կուտակումն արդյունաբերության ներսում»։

Արտապլանային կուտակումների համար

մղվող պայքարի հիանալի արդյունքները վկայում են ընկեր Ստալինի իմաստուն ցուցումների հետևողական կիրառումը, մեր աշխատավորական լայն մասսաների սոցիալիստական գիտակցության բարձրացումը, սովետական պետության շահերի նկատմամբ նրանց ունեցած անդադրում հոգատարությունը։

Լենինականի Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի ոլորող ցեխի բանվոր Նինա Մերոշնիկովան հետպատերազմյան իր հնգամյա պլանը կատարել է 1948 թվին, աշխատում է 1954 թ. հաշվին. ապահովելով նախատեսված առաջին տեսակի արտադրանքի պլանը, անցած տարիներին տվել է 223 հազար 579 կիլոգրամ նախամանվածք։ Նրա աշխատավարձը աճել է 40 տոկոսով։ Մրցելով սոցիալիստական մրցության մեջ, վերցրել է նոր պարտավորություն՝ մինչև 1950 թ. նոյեմբերի 29-ը կատարել տարեկան պլանը և արտապլանային կարգով տալ 500 կիլոգրամ նախամանվածք։ Տեքստիլ կոմբինատի Գործվածքային ֆաբրիկայի ջուլհակուհի Աստղիկ Պետրոսյանը հնգամյակը կատարել է 1949 թվին, աշխատում է 1952 թվի հաշվին. Նրա աշխատավարձը աճել է 150 տոկոսով։ Մրցելով իր հերթափո-



խի հետ, որոշել է 1950 թ. պլանը կատարել 8 ամսում, մնացած ժամանակը աշխատել արտապլանային կուտակումների հաշվին։

Սոցիալիստական արտապլանային կուտակումների անսպառ աղբյուր է սոցիալիստական մրցությունը, որը դարձել է մեր Հայրենիքի բոլոր աշխատավորների սեփականությունը։

Ագիտատորների պատվի գործն է օգնել պարտիական կազմակերպություններին՝ մոբիլիզացնելու արդյունաբերության աշխատողների ուժերը սոցիալիստական մրցության ծավալման, աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման, տնտհաշվարկի արմատավորման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով հասնելու նորանոր հաջողությունների սոցիալիստական արտապլանային կուտակումների ավելացման բնագավառում։

Սոցիալիստական կուտակումները հուժկու հարված են նոր պատերազմի հրձիգներին՝ ամերիկա-անգլիական իմպերիալիստներին։

Թող ավելի ու ավելի խտանան սոցիալիստական կուտակումներ ունեցող ձեռնարկությունների շարքերը, որոնք է՛լ ավելի կբարձրացնեն խաղաղության մեծ դրոշակակիր՝ Սովետական Միության հզորությունն ու փառքը։

Վ. ԱՎԱԳՅԱՆ

# ԾԱՎԱԼԵԼ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՓՈՐՁԻ ՓՈԽԱՆԱԿՈՒՄԸ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ կոլխոզներում, սովխոզներում հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին մեծ ու պատասխանատու խնդիրներ է դնում պարտիական կազմակերպությունների և ագիտատորների առաջ։

Ռեսպուբլիկայի անասնապահական շատ կոլխոզներ, սովխոզներ և ֆերմաներ հաջողությամբ անցկացնելով անասունների ձմեռային շրջանը, այս տարի ավելի նախապատրաստված և կազմակերպված դուրս եկան յայլաղները։

Յայլաղներում աշխատող ագիտատորների մարտական խնդիրն է՝ գլխավորել ու առաջ մղել անասնապահ կոլխոզնիկների աշխատանքային խանդավառությունը, օգնել նրանց կատարելու ու գերակատարելու կոլ-



խոզի, ֆերմայի առաջադրանքները, ավելացնելու անասունների գլխաքանակը և բարձրացնելու մթերատվությունը։

Անասնապահության ֆրոնտում աշխատող ագիտատորները բոլշևիկյան ճշմարիտ խոսքը ժամանակին պետք է հասցնեն յուրաքանչյուր կոլխոզնիկի, օգտագործելով քաղաքական ագիտացիայի բազմազան ձևերն ու մեթոդները։ Որպեսզի յայլաղներում աշխատող ագիտատորների զրույցները կոնկրետ և նպատակասլաց լինեն, նրանք պետք է լայնորեն օգտագործեն տեղի առաջավոր անասնապահների, ֆերմաների աշխատանքի փորձը, ձգտեն բոլոր կոլխոզնիկների սեփականությունը դարձնել գյուղատնտեսության առաջավորների, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների հարուստ և արժեքավոր փորձը։

Ամառվա ընթացքում անասունների խնամքը լավ կազմակերպելու, մթերատվությունը բարձրացնելու, պետական պարտավորությունները ժամանակին կատարելու գործում կոլխոզնիկների ուժերը մոբիլիզացնելու հզոր լծակներից մեկն է սոցիալիստական մրցությունը, որի օրինակելի կազմակերպման հարցում մեծ դեր ունեն կատարելու

ագիտատորները։ Նրանք ամենուրեք պետք է
հետևեն անասնապահ կոլխոզնիկների վերց-
րած պարտավորությունների կատարման
ընթացքին, օգնեն նրանց կատարելու իրենց
պարտավորությունները, պատի թերթերի,
խլվիշովկաների, զրույցների միջոցով մաս-
սայականացնեն սոցիալիստական մրցու-
թյան արդյունքները։

Այս տեսակետից ուշագրավ է Ա. Ի.
Միկոյանի անվան շրջանի Քարա-
գլուխ գյուղի Ա. Ի. Միկոյանի ան-
վան կոլխոզի անասնապահական ֆերմա-
ներում տարվող ագիտացիոն-մասսայական
աշխատանքի փորձը։ Կոլխոզի բոլոր ա-
նասնապահներն ունեն սոցիալիստական
մրցության պայմանագրեր, որոնք սիստեմա-
տիկաբար ստուգման են ենթարկվում և ա-
գիտատորների միջոցով լայնորեն մասսա-
յականացվում են սոցիալիստական մրցու-
թյամբ ստանձնած պարտավորությունների
կատարման արդյունքները։ Ագիտատորները
կոլխոզնիկներին մշտապես պարզաբանում
են պարտիայի և կառավարության որոշում-
ները, Համամիութենական գյուղատնտեսա-
կան ցուցահանդեսին մասնակցելու պայ-
մանները, Հայկական ՍՍՌ Մինիստրների



Սովետի որոշումը անասնաբուծության զար-
գացման ֆրոնտում առավել աչքի ընկնող
շրջաններին, կոլխոզներին փոխանցիկ Կար-
միր Դրոշ շնորհելու և կոլխոզներին ու կոլ-
խոզնիկներին դրամական պարգևներ տալու
մասին։

Քաղաքական-բացատրական աշխատանքի
շնորհիվ Ա. Ի. Միկոյանի անվան կոլխոզը
զգալի նվաճումներ է ձեռք բերել անասնա-
բուծության զարգացման բնագավառում։
Կոլխոզի ոչխարաբուծական և կովաբուծա-
կան ֆերմաները ժամանակից շուտ կատա-
րել են անասնաբուծության զարգացման ե-
ռամյա պլանները։ Այժմ կոլխոզի ոչխարա-
բուծական ֆերմայի աշխատողները պայքա-
րում են յուրաքանչյուր ոչխարի կաթնատը-
վությունը հասցնել 90 լիտր կաթի՝ պլանով
սահմանված 65 լիտրի փոխարեն։ Ոչխար-
ների խնամքը ուժեղացնելու, գիշերային
արոտի կազմակերպման շնորհիվ ոչխարա-
բուծական ֆերման գերակատարում է կաթ-
նամթերքի առաջադրանքը։

Յայլաներում աշխատող անասնապահ
կոլխոզնիկներին լիովին քաղաքական ագի-
տացիայի մեջ ընդգրկելու, նրանց հետ

տարվող ագիտացիան ավելի մատչելի և հասկանալի դարձնելու համար յուրաքանչյուր անասնապահական ֆերմա և բրիգադա պետք է ունենա իր ագիտատորը, իսկ խոշոր ֆերմաներին կից պետք է կազմակերպել ագիտկոլեկտիվներ։ Ագիտացիոն աշխատանքի մեջ պետք է լայնորեն ներգրավել զոոտեխնիկներին, անասնաբույժներին, անասնապահական ֆերմաներում աշխատող առաջավոր կոլխոզնիկներին։

Ագիտատորները պետք է օգնեն պարտիական կազմակերպություններին յայլաղներում կազմակերպելու կարմիր անկյուններ, այն ապահովելով քաղաքական, գեղարվեստական, անասնաբուծության զարգացման վերաբերյալ գրականությամբ, ինչպես նաև թերթերով, ժուռնալներով, պլակատներով, քարտեզներով և ցուցադրական նյութերով։ Քաղաքական ագիտացիայի կազմակերպման հետ զուգընթաց ագիտատորները ակումբա-գրադարանային աշխատողների հետ միասին, յայլաղներում կոլխոզնիկների համար պետք է կազմակերպեն գեղարվեստական ինքնագործ խմբերի ելույթներ, կինոնկարների ցուցադրումներ, կազմակերպեն զեկուցումներ, զրույցներ։



Ագիտատորներն իրենց զրույցներում պետք է մեծ տեղ տան հանրային անասնաբուծության զարգացման հարցերին, ինչպես օրինակ, մատղաշ անասունների խնամքի կազմակերպման, հորթերին մորից անջատ կերակրման, անասունների ամառային արոտի ճիշտ և ռացիոնալ օգտագործման, գիշերային արոտի կազմակերպման հարցերին։

Միկոյանի անվան շրջանի Գնիշիկ գյուղի կոլխոզի անասնապահական ֆերմաներում աշխատող ագիտատորներ Խ. Խաչատրյանի, Մ. Խուրշուդյանի և մյուսների նախաձեռնությամբ այս տարվա գարնանից կազմակերպվել է կովերի և ոչխարների գիշերային արոտը։ Դրա շնորհիվ զգալի չափով ավելացավ կովերի և ոչխարների կաթնատվությունը, ժամանակից շուտ երկու ֆերմաներ կատարեցին կաթնամթերքի պետական պարտավորությունները։ Ագիտատորները մասսայականացրել են Ղուկասյանի շրջանի առաջավոր անասնապահ կոլխոզնիկների կոչը և ամեն կերպ ծավալում են Սովետական Հայաստանի 30-ամյակի պատվին սկսած

սոցիալիստական մրցումը։ Կոլխոզի անվանի հովիվներ Վ. Պետրոսյանը և Ա. Վարդանյանը, որոնք խնամում են 550—600 գլուխ ոչխար, խոստացել են ամառվա սեզոնի ընթացքում ոչ մի կորուստ չտալ, իսկ ոչխարաբուծական ֆերմայի աշխատողները պարտավորվել են յուրաքանչյուր ոչխարի կաթնատվությունը հասցնել մինչև 90 լիտրի։ Ագիտատորները ֆերմաներում ստեղծել են կարմիր անկյուններ և կահավորել այն։ Այստեղ անասնապահների համար կազմակերպվում են քաղաքական, գիտա-պոպուլյար թեմաների շուրջը հետաքրքիր զրույցներ, թերթերի բարձրաձայն ընթերցանություններ։ Ագիտատոր Ս. Խաչատրյանը քաղաքական թեմաների շուրջ կատարվող զրույցներին զուգընթաց հաճախակի նաև զրույցներ է ունենում անասնակերի, զոոտեխնիկական կանոնների, արոտավայրերի ճիշտ և ռացիոնալ օգտագործման, անասունների լավագույն խնամքի կազմակերպման հարցերի շուրջը։ Ֆերմաների ագիտատորները օգտագործում են ցուցադրական ագիտացիայի զանազան ձևերը, լույս են ընծայում ֆերմաների խլփշովկաներ, մասսայականացնում են առաջավոր անասնապահների աշխատանքի արժեքավոր փորձը, օգնում են ետ մնացողներին հասնելու առաջավորներին։



Անասնապահական ֆերմաներում, բրիգադաներում աշխատող բոլոր ագիտատորները իրենց քաղաքական-մասսայական ամբողջ աշխատանքը պետք է ուղղեն կատարելու հանրային մթերատու անասնաբուծության զարգացման վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները։

Պայքարը հանրային մթերատու անասնաբուծության նոր վերելքի համար — յուրաքանչյուր կոլխոզում, սովխոզում, ֆերմայում և բրիգադայում աշխատող ագիտատորի մարտական խնդիրներից մեկն է։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլխոզային դաշտերում աշխատում են հարյուրավոր կոմերիտական և արտամիութենական երիտասարդ ագիտատորներ, որոնք օգնում են պարտիական կազմակերպություններին՝ աշխատավորներին հասցնելու բոլշևիկյան ճշմարտացի խոսքը, պարզաբանելու պարտիայի և կառավարության քաղաքականությունը, մոբիլիզացնելու աշխատավորների ուժերը՝ հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները։

Կոմերիտական ագիտատորները արդյունաբերության և գյուղատնտեսության բընագավառում աշխատող երիտասարդության շրջանում ծավալում են սոցիալիստական մրցությունը, մասսայականացնում նորարարների, ստախանովականների, ռացիոնալիզատորների հայրենասիրական նախաձեռնություններն ու աշխատանքային հարուստ



փորձը։ Նրանք իրենց ամենօրյա աշխատանքով երիտասարդությանը դաստիարակում են անսահման սիրո ու նվիրվածության ոգով դեպի սոցիալիստական Հայրենիքը, ոգեշնչում երիտասարդ հայրենասերներին՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոր տեխնիկայի արմատավորման, արտադրանքի որակի բարելավման և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար։

Կիրովի անվան գործարանում երիտասարդ ագիտատորները յուրաքանչյուր օր, աշխատանքից հետո իրենց ունկնդիրներին տեղյակ են պահում օրվա կատարած աշխատանքի արդյունքների մասին և բացատրում հաջորդ օրվա խնդիրները։ Նրանք սիստեմատիկաբար կազմակերպում են թերթերի բարձրաձայն ընթերցանություն, անց են կացնում զրույցներ միջազգային դրության, մեր պարտիայի քաղաքականության, կոմերիտմիության պատմության և այլ թեմաների շուրջը, կապելով այն արտադրության կոնկրետ հարցերի հետ։ № 1—11 ցեխի կոմերիտական ագիտատոր Գ. Գրիգորյանը հաջող է կազմակերպել ցեխում աշխատող երիտասարդ բանվորների մեջ սոցիալիստական

մրցությունը, որի շնորհիվ այժմ ցեխի բոլոր երիտասարդ բանվորները կատարում են իրենց արտադրական պլանները 110—125 տոկոսով։ Իրենց ագիտացիոն աշխատանքներով աչքի են ընկնում գործարանի կոմերիտական ագիտատորներ Ռ. Մելիք-Իսրայելյանը, Վ. Կոստասովը, որոնք երիտասարդությանը ծանոթացնում են արտադրության նորարարներ Մ. Ռոժնևայի, Լ. Կոնոնենկոյի, Ն. Նազարովայի, Լ. Կորաբելնիկովայի և ուրիշների աշխատանքի լավագույն մեթոդների հետ, օգնում երիտասարդ բանվորներին՝ աշխատել նրանց փորձով ու օրինակով։

Բազմաթիվ են այն երիտասարդ ագիտատորները, որոնք արտադրության մեջ կատարած իրենց անձնական աշխատանքով ու օրինակով կազմակերպում ու ոգեշնչում են երիտասարդ հայրենասերների հերոսական աշխատանքը։ Երևանի ժամացույցի գործարանի երիտասարդ ագիտատոր, փականագործ կոմերիտական Մեխակ Ավետիսյանը իր պլանները սիստեմատիկաբար կատարում է 180—200 տոկոսով, նա իր ցեխի երիտասարդ բանվորների համար սիստեմատիկորեն կազմակերպում է զրույցներ, ա-



մեն մի զրույց սերտորեն կապելով ցեխի արտադրական առաջադրանքի կատարման հետ։

Կոմերիտական ագիտատորները մեծ դեր են խաղում նոր տեխնիկայի արմատավորման գործում։ Նրանք բացատրում են երիտասարդությանը արտադրական պրոցեսների ավտոմատիզացիայի և մեխանիզացիայի լայն կիրառման նշանակությունը, օգնում երիտասարդ բանվորներին տիրապետելու տեխնիկան։ Վերջերս ՀԼԿԵՄ Ստալինյան ռայոնական կոմիտեն հրավիրեց երիտասարդ ռացիոնալիզատորների և գյուտարարների ռայոնական հավաք, ուր յուրաքանչյուր երիտասարդ ռացիոնալիզատոր գծագրված դիագրամներով բացատրեց իր առաջարկության նշանակությունը և այն, թե ինչպես հասավ նա տեխնիկայի նոր մեթոդների կիրառմանը։ Հավաքից հետո, ռայոնի երիտասարդ ագիտատորները սկսեցին լայնորեն մասսայականացնել ռացիոնալիզատորների և նորարարների աշխատանքի լավագույն փորձը։

Լավագույն արդյունքների են հասել Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի ագիտատորները։ Հոկտեմբեր գյուղի կոմերի-

տական կազմակերպության քարտուղար
ընկ. Ս. Խաչատրյանը կոլխոզի լավագույն
ագիտատորն է։ Նա երիտասարդ կոլխոզնիկ-
ներին սիստեմատիկաբար ծանոթացնում է
գյուղատնտեսության առաջավորներին Սո-
ցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում
շնորհելու պայմանների հետ, մասսայակա-
նացնում է մեր ռեսպուբլիկայի Սոցիալիս-
տական Աշխատանքի Հերոսների աշխա-
տանքային փորձը, ծանոթացնում է առա-
ջավոր բամբակագործների և խաղողագործ-
ների նվաճումները, օգնում կոլխոզային
երիտասարդությանը կատարելու սոցիալիս-
տական մրցությամբ ստանձնած պարտա-
վորությունները։ Քաղաքական-մասսայական
աշխատանքն անցյալ տարի մեծապես օգ-
նեց երիտասարդ կոլխոզնիկներին հասնելու
բամբակի բարձր բերքատվության, որի հա-
մար կոլխոզի տասնյակ երիտասարդներ ար-
ժանացան կառավարական բարձր պարգևնե-
րի։ Կոլխոզային դաշտերում մեծ աշխատանք
են կատարում նաև Բամբակաշատ գյուղի ե-
րիտասարդ ագիտատորները։

Ապարանի շրջանի Քասախ գյուղի ագի-
տատոր ընկ. Բ. Սիմոնյանն աշխատանքի



ընդմիջման ժամանակ բրիգադայի աշխա-
տողների համար թերթերից կարդում է օրվա
նորությունները, կազմակերպում է զրույցներ,
մասսայականացնում առաջավոր կոլխոզնե-
րի և կոլխոզնիկների աշխատանքի փորձը,
պարզաբանում դաշտապաշտպան անտա-
ռաշերտերի, հողի նախացանքային մշակու-
թյան, ռոտացման սիստեմի, հողի պարարտաց-
ման նշանակությունը։ Ագիտատորի նախա-
ձեռնությամբ դաշտում տեղծված է շրջիկ
գրադարան, որտեղ լինում են օրվա թերթե-
րը, քաղաքական և գեղարվեստական գրակա-
նություն, լույս են տեսնում դաշտային խլի-
չովկաներ, ուր լուսաբանվում են աշխա-
տանքային օրվա արդյունքները, մասսայա-
կանացվում առաջավորների աշխատանքի
լավագույն փորձը։

Արդյունաբերական ձեռնարկությունների,
նորակառույցների, կոլխոզների և սովխոզ-
ների կոմերիտական ագիտատորների խնդի-
րըն է՝ օգնել երիտասարդ հայրենասերներին,
լինել հետպատերազմյան ստալինյան հնգ-
ամյակի խնդիրների կատարման համար
մղվող համաժողովրդական պայքարի առա-
ջին շարքերում։

Գ. ՏՈՆՈՅԱՆ

## ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՃԻՇՏ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔԸ

*Արտադրության մեջ ժամանակի ճիշտ և ռացիոնալ օգտագործումը հանդիսանում է աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն նախապայմաններից մեկը։ Սոցիալիստական արդյունաբերության նորարարները թամբելով սովետական առաջավոր տեխնիկան, գերազանցելով սարքավորումների նախագծային կարողությունները, պայքարում են առավելագույն շահավետությամբ օգտագործել աշխատանքային յուրաքանչյուր րոպեն, վայրկյանը։*

*Ժամանակի լավագույն օգտագործման օրինակ է տալիս Լենինականի Տեքստիլ կոմբինատի ստախանովական բանվորուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Եվդոկիա Լիխաչևան։ Նա խորը տիրապետելով իր դազգահների տեխնիկային, մշակել է աշխատանքային ճիշտ ռեժիմ, ըստ որի արտադրողաբար է օգտագործում բանվորական օրվա յուրաքանչյուր վայրկյանը։ Ամեն առավոտ, աշխատանքն սկսվելուց 10—15 րոպե առաջ Ե. Լիխաչևային կարելի է տեսնել ցեխում, իր մեքենաների մոտ։ Նա այդ ժամանակ նախապատրաստում է նախամանվածքը, դասավորում դատարկ կոճերը, որպեսզի սիոմը լցվելու ժամանակ անմիջապես փոխի։ Աշխատանքը սկսելուց հետո, յուրաքանչյուր կես ժամը մեկ անգամ դատարկվում են նախամանվածքով փաթաթված կոճերը։ Դրանք լիքը կոճերով փոխելը միջին ուրակի բանվորուհուց խլում է 15—20 րոպե։ Մինչդեռ Լիխաչևան այդ աշխատանքը կատարում է 5—7 րոպեում։ Ամեն անգամ սիոմը փոխելիս նա անպայման մաքրում է մեքենաների ձգողական մեխանիզմները և վերին ու ներքին կարետկաները։ Իսկ եթե թելը կտրվում է, ապա նախատեսված 30 վայրկյանի փոխարեն Լիխաչևան կտրվածքը վերացնում է 8—10 վայրկյանում։ Աշխատանքի ճիշտ կազմակերպման և բանվորական ժամանակի խելացի օգտագործման շնորհիվ Ե. Լիխաչևան օրավուր ավելացնում է արտադրանքի թողարկումը։*

*Աշխատանքային ժամերը արդյունավետ օգտագործելու լավ օրինակ է տալիս նույն կոմբինատի մանող Վ. Խաչատրյանը։ Աշ-*

խատանքի ներկայանալիս նրա առաջին գործն է լինում իր հերթափոխի հետ միասին տեղափոխել և մանող մեքենայի հարթակի վրա կուտակել անհրաժեշտ քանակությամբ նախամանվածք։ Դրանից հետո հանձնող և ընդունող հերթափոխերը միասին ստուգում են մեքենաների տեխնիկական վիճակը, վերացնում թերությունները, լուրջ խանգարումներ նկատվելու դեպքում կանչում ենթավարպետին։ Մինչև աշխատանքի սկսելը, Վ. Խաչատրյանը մաքրում է մեքենաներն ու նրանց շրջակայքը փոշուց, արտադրական մնացորդներից և ճիշտ ժամին սեղմում էլեկտրական կոճակը։ Աշխատանքային առաջին րոպեներին մանածագործը օգնության կարիք է զգում։ Էլեկտրական հոսանքով գործի գցվող իլիկների և մասրաների ցնցումից շատ հաճախ առաջանում է մասսայական կտրվածք։ Դրությունը վերականգնելու համար նրան օգնության են գալիս սիոմշչիկները։ Այսպիսով, մեքենաների աշխատանքը նորմալ հունի մեջ գցելուց հետո Վ. Խաչատրյանն անցնում է աշխատանքի, այսինքն սկսվում է նրա մարշրուտը։ Բանվորական տեղի լավ նախապատրաստման շնորհիվ, նա հնարավորություն է ստանում անխափան և լրիվ ծանրաբեռնվածությամբ



աշխատեցնել մեքենաները, բանվորական օրվա յուրաքանչյուր րոպեն օգտագործել արդյունավետ։

Մեքենաները նորմալ հունի մեջ գցելուց հետո Խաչատրյանը հսկում է նրանց ռիթմիկ աշխատանքին, առանց ուշացումների տեղադրում նախամանվածքի կոճերը և ժամանակին կանխում այն թերությունները, որոնք կարող են պատճառ դառնալ կտրվածքների։ Անվանի բանվորուհին պարապուրդները կրճատելու համար մշակել է աշխատանքային մարշրուտ։ Ըստ այդ մարշրուտի, նա մեքենաների բոլոր կողմերում լինում է որոշակի ժամին, հսկողության տակ պահելով ամեն մի իլիկ։ Այդ մարշրուտը հնարավորություն է տալիս ժամանակին նկատելու թելի կտրվածքները, մեքենաների տարբեր մասերի խանգարումները և վերացնել դրանք։

Ժամանակի օգտագործման իսկական վարպետների թիվը մեծ է նաև Գործվածքային ֆաբրիկայում։ Ջուլհակուհի Ա. Պետրոսյանը այժմ աշխատում է 1952 թվականի հաշվին։ Հետպատերազմյան հնգամյակի անցած տարիներին նա երկրին տվել է 542.727 մետր բարձրորակ գործվածք և ձգտում է մինչև Հայաս-

տանում սովետական կարգերի հաստատման 30-ամյակի օրը կատարել ես 1,5 տարվա պլան։ Այս հաջողությունների առաջին հերթին արդյունք են այն բանի, որ ջուլհակուհի Պետրոսյանը գիտե օգտագործել ժամանակի ամեն մի րոպեն և խնայված վայրկյանները տրամադրել լրացուցիչ արտադրանքի թողարկման համար։ Տեխնոլոգիական պրոցեսում կտրվածքները վերացնելու համար սահմանված է 31,2 վայրկյան. այս աշխատանքը նա կատարում է 10 վայրկյանում։ Հենքի կանոնավորման համար նախատեսվում է 33,4 վայրկյան։ Այս ժամանակամիջոցը նույնպես նա կրճատել է կիսով չափ։ Պարզ է, որ խնայված րոպեները անվանի ջուլհակուհուն հնարավորություն են տալիս ավելացնել արտադրանքի թողարկումը։ Երբեմն պատահում է, որ հենքի թելը կտրվում է մի քանի դազգահների վրա։ Հմուտ ջուլհակուհին առաջին հերթին վերացնում է այն դազգահների կտրվածքները, որոնք թվով քիչ են։ Այս ճանապարհով միայն ժամանակի խնայման շնորհիվ նա աշխատանքային յուրաքանչյուր օր պլանից ավելի տալիս է 80—90 մետր գործվածք։

Գործվածքային ֆաբրիկայում շատ հետևորդներ ունի բազմադազգահային ջուլ-



հակուհի Տատյանա Միխալչուկը։ Սպասարկելով 16 դազգահ, նա արտադրել է մի քանի հազար մետր գործվածք։ Հայրենասեր բանվորուհու արտադրական այս հաջողությունները ձեռք են բերված նվիրված և հետևողական աշխատանքով։ Բանվորական օրվա յուրաքանչյուր րոպեն նա օգտագործում է ռացիոնալ կերպով։ Գերազանց վիճակում պահելով սարքավորումները, վերջին օրերս նա կատարում է 1,5 արտադրական նորմա։ Ջուլհակուհի Միխալչուկը հասել է այն բանին, որ կիսով չափ կրճատել է հենքի և միջնաթելի կտրվածքի համար նախատեսված նորմաները։ Մի այլ օրինակ. դազգահների տեխնիկական թերությունների վերացման համար տրվում է 25 րոպե, սակայն այդ նպատակին նա գրեթե ոչ մի րոպե չի հատկացնում, որովհետև նա ժամանակին հոգ է տանում դազգահների տեխնիկական խնամքի մասին, կանխում այդ թերությունները։

Ուսանելի է Տեքստիլ կոմբինատի անվանի ննթավարպետ, արտադրանքի գերազանց որակի բրիգադիր Մ. Դեմիրճյանի աշխատանքը։ Նա հանդես է գալիս որպես արտադրության իսկական հրամանատար, հետևում է տեխնիկական կանոնների ճիշտ կիրառ-

ման, ստուգում աշխատանքի ընթացքը և իր գիտելիքները հաղորդում ջուլհակներին։

Ենթավարպետ Դեմիրճյանը հատուկ ուշադրություն է դարձնում հերթափոխության ընդունմանը և հանձնմանը։ Որպես կանոն հերթափոխությանը մասնակցում են կոմպլեկտի բոլոր աշխատողները։ Աշխատատեղի լավ նախապատրաստումը հնարավորություն է տալիս ջուլհակներին ազատվել կողմնակի, երկրորդական աշխատանք կատարելուց։ Հերթափոխության ժամանակ նա բազմակողմանիորեն ծանոթանում է յուրաքանչյուր դազգահի տեխնիկական վիճակին, ժամանակին կատարում պրոֆիլակտիկ ստուգումներ, որի շնորհիվ աշխատանքի պրոցեսում ավելի շատ ժամանակ է խնայվում, մինիմումի են հասնում պարապուրդները ու կտրվածքները։

Առաջավոր ենթավարպետը կազմակերպել է կոլեկտիվ ստախանովյան աշխատանք։ Նորարար վարպետ Ռոսսիյսկու օրինակով ամեն ամսվա վերջում մշակում է եկող ամսվա առաջադրանքը, որի մեջ նշվում է, թե երբ և որ դազգահը պետք է մանրամասն ստուգման ենթարկվի, ինչքան պետք է լինի նորմաների միջին կատարողականը և յու-



րաքանչյուր ջուլհակ որքան արտադրանք պետք է տա։

Մ. Դեմիրճյանը արդյունավետ կերպով է օգտագործում աշխատանքային օրվա յուրաքանչյուր ժամն ու րոպեն։ Սովորաբար տեխնիկական թերությունների կանոնավորմանը ենթավարպետը պետք է տրամադրի աշխատանքային օրվա 30 տոկոսը։ Բայց Միհրան Դեմիրճյանը ավելի քիչ ժամանակ է տրամադրում այդ նպատակին, որովհետև նա ամեն օր տեխնիկական խնամք է տանում մեքենաների նկատմամբ, թույլ չի տալիս, որպեսզի խորանան և բարդանան այս կամ այն մասի խափանումները։ Նա աշխատանքային օրվա մեծ մասը տրամադրում է բանվորական աշխատանքի տեղի կազմակերպմանը, առաջավոր փորձի ընդհանրացմանը, ջուլհակների տեխնիկական գիտելիքների հարստացմանը։

Ճիշտ օգտագործելով աշխատանքային ժամանակը, Տեքստիլ կոմբինատում աշխատողները ուժ ու ջանք չեն խնայում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու և սոցիալիստական Հայրենիքին ավելի շատ, բարձրորակ արտադրանք տալու համար։

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՖԻԶԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ՝ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԳՈՐԾ Է

1. Սովետական ֆիզիկական կուլտուրան և սպորտը՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց առողջության բարելավման և սովետական ժողովրդին աշխատանքի և սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու կարևորագույն միջոցներից մեկն է։

2. Ֆիզկուլտուրային շարժման մասսայականության, սպորտային բարձր վարպետության, սպորտի կարևորագույն ձևերի գծով համաշխարհային առաջնության նվաճման համար մղվող պայքարը՝ սովետական ֆիզկուլտուրնիկների պատվավոր գործն է։

3. Հասարակական բոլոր կազմակերպությունների գործն է՝ ապահովել սպորտի բոլոր ձևերի լայն ծավալումը, կազմակերպչո-



րեն ամրապնդել գոյություն ունեցող ֆիզկուլտ կոլեկտիվները և ստեղծել նոր կոլեկտիվներ արդյունաբերական բոլոր ձեռնարկություններում, հիմնարկներում, ՄՏ կայաններում և կոլխոզներում։

4. Ֆիզկուլտուրնիկի օրը նշանավորենք ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նոր հաջողություններով։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ամեն կերպ ծավալել ֆիզիկական կուլտուրան և սպորտը: «Культура и жизнь», 1949 թ., 11 հունվարի։

ՀԱՄԿԽ-ում: Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման մասին պրոֆմիությունններում: «Պրավդա», 1950 թ., 14 ապրիլի։

Ֆիզկուլտուրայի շարժման մասսայականության և սպորտային բարձր վարպետության համար: «Պրավդա»-ի 1950 թ. մայիսի 26-ի առաջնորդողը։

## II

## ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՕՐԸ

1. ՍՍՌՄ-ը երկաթուղային մեծ տերություն է։

2. Երկաթուղային տրանսպորտի դերը մեր երկրի ժողովրդական տնտեսության հետպատերազմյան զարգացման մեջ։

3. Գնացքների արագ կազմավորումը, վագոնների շրջապտույտի արագացումը, վագոնների օրական առաջադրանքի և բոլոր բեռների գծով փոխադրումների պլանի գերակատարումը— երկաթուղային տրանսպորտի հաջող աշխատանքի անհրաժեշտ պայմանն է:

4. Երկաթուղայինների Ստալինյան օրը դիմավորենք սոցիալիստական մրցության լայն ծավալումով հանուն երկաթուղային տրանսպորտի աշխատանքի նորանոր նվաճումների:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Օրենք՝ ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին: *Հայպետհրատ, 1946 թ.:*

Մինիստրության կոլեգիայում. Երկաթուղայինների Ստալինյան օրը նախապատրաստելու և անցկացնելու մասին: *«Գուդոկ», 1950 թ., 4 հունիսի:*

Բ. Պ. Բեշչև: ՍՍՌՄ 3-րդ գումարման Գերագույն Սովետի Առաջին սեսիայում արտասանած ճառը: *«Պրավդա», 1950 թ., 16 հունիսի:*

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ի. ՍՏԱԼԻՆ.— Մարքսիզմի վերաբերյալ լեզվաբանության մեջ: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 20.000, 93 էջ:*

Ի. Ն. ՌՈՒՍՊԵՆՍԿԻ.— Գուրկին Ամերիկայի մասին: *Մոսկվայի Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության կենտրոնական լեկտորիումում կարդացած հրապարակային դասախոսության սղագրությունը: 1950 թ., տիրաժ 6000, 54 էջ, գինը 1 ռ.:*

Մ. Հ. ԱԴՈՆՑ.— Արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները: *Երևանում կարդացած հրապարակային դասախոսության սղագրությունը: 1950 թ., 44 էջ, գինը 1 ռ.:*

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ.— Արևային ջերմոցներ: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 2000, 35 էջ:*

ՎՍԵՎՈԼՈԴ ՍԱԼԲԻՆ.— Ժողովրդի զավակը: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 4.300, 319 էջ:*

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ